Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1952

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին,
Հեռախոս՝ 2—52—78

# Է՛Լ ԱՎԵԼԻ ԱՄՐԱՊՆԴԵՆՔ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարում արտասանած իր ճառի մեջ ընկ. Լ. Պ. Բերիան դելեգատների երկարատև ծափահարությունների տակ ասաց. «Մեր պարտիայի առաջնորդ ընկեր Ստալինի մեծ ծառայությունն այն է, որ իր իմաստուն ղեկավարությամբ նա ապահովեց մեր երկրի բոլոր ժողովուրդների ֆիզիկական ու հոգևոր ուժերի իսկական վերածնունդն ու աննախընթաց վերելքը, եղբայրական անխախտ բարեկամությամբ համախմբեց ու նրանց ջանքերն ուղղեց դեպի միասնական մեծ նպատակը՝ դեպի մեր Հայրենիքի հզորության ամրապնդումը և կոմունիզմի հաղթանակը»։

Մեր արդյունաբերական ձեռնարկություններում և կոլտնտեսություններում աշխատող ագիտատորները իրենց զրույցների ժամանակ զգալի ուշադրություն են նվիրում ժո-

ղովուրդների ստալինյան բարեկամության թեմային։ Զրույցի համար ամեն մի ագիտատոր կարող է բազմաթիվ փաստեր գտնել իր շրջապատում։ Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ գործարաններ ու կոլտնտեսություններ սերտ կապեր են հաստատել եղբայրական մի շարք ռեսպուբլիկաների աշխատավորների հետ։ Այդ կապերի մեջ վառ արտահայտություն է գտել սովետական մարդկանց անսահման հոգատարությունն իրենց Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման նկատմամբ։

Ահա, օրինակ, Երևան քաղաքի Ստալինյան ռայոնը։ Այստեղ դժվար է գտնել մի այնպիսի ձեռնարկություն, որի կոլեկտիվը գրավոր կապ չունենա Մոսկվայի և Լենինգրադի կամ Բաքվի ու Թբիլիսիի գործարաններից որևէ մեկի կոլեկտիվի հետ։

Երկու տարուց ավելի է, ինչ Երևանի խոշորագույն արդյունաբերական ձեռնարկություններից մեկի՝ էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը մրցում է Բաքվի էլեկտրամեքենաշինական և Թբիլիսիի Դազգահաշինական գործարանների կոլեկտիվների հետ։ Մրցությունը սկսվեց կոմունիզմի մեծ կառուցումների համար պատվերներ ստանալու օրերին։ Կատարելով իր խոստու-



մը, Երևանի գործարանը վերջին տարիներին այդ հոյակապ կառուցումներին է ուղարկել հարյուրավոր զանազան տիպի տրանսֆորմատորներ։

Երևանցիները նամակներ են գրում իրենց մրցակիցներին, նրանցից պատասխաններ ստանում։ Գրավոր կապից բացի՝ մրցողների միջև ստեղծվել է նաև կենդանի կապ։ Այսպես, օրինակ՝ վերջերս երևանցիները այցելության գնացին Թբիլիսիի դազգահաշինարարներին, տեղում ուսումնասիրեցին նրանց աշխատանքի փորձը, ծանոթացան իրենց մրցակիցների արտադրական հաջողություններին։

Ահա և մի այլ օրինակ։ Երևանի Կոշիկի № 3 ֆաբրիկան կառուցվել է հետպատերազմյան հնգամյակի տարիներին։ Նորակառույց ֆաբրիկայի կոլեկտիվի առաջ դրված էր մի անհետաձգելի խնդիր՝ յուրացնել ստացված նոր տեխնիկան։ Սակայն երիտասարդ կոլեկտիվը հնարավորություն չուներ կարճ ժամանակամիջոցում լուծելու այդ խնդիրը սեփական ուժերով։ Ֆաբրիկայի ղեկավարները որոշեցին օգնություն խնդրել Թբիլիսիի Լ. Պ. Բերիայի անվան Կոշիկի ֆաբրիկայից։ Վերջինս անմիջապես արձագանքեց. Թբիլիսիից ուղարկվեցին մի

շարք լավագույն մասնագետներ, որոնք տեղում օգնեցին և գործը առաջ տարան։

Եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորների հետ սերտ կապ են հաստատել նաև Լենինականի ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք մրցման մեջ են մտել Վրաստանի Քութայիսի և Ադրբեջանի Կիրովաբադ քաղաքների աշխատավորների հետ։

Արդեն հինգ տարի է, որ շարունակվում է այդ երեք եղբայրական քաղաքների մրցությունը։

Մրցության պայմանագրերը ստուգելու համար այդ քաղաքների ներկայացուցիչները հաճախ հանդիպումներ են ունենում։ Ամեն մի այդպիսի հանդիպում վեր է ածվում ժողովուրդների անկեղծ բարեկամության մի վառ ցույցի։

Սակայն այդ երեք քաղաքների աշխատավորների կապը չի սահմանափակվում միայն փոխադարձ այցելություններով։ Այդ քաղաքների բանվորները, ծառայողները, պարտիական և սովետական աշխատողները հաճախ հանդես են գալիս նաև մամուլում, պատմելով իրենց աշխատանքների մասին, արտահայտելով իրենց խոհերն ու զգացմունքները։

Փոստը ամեն օր բազմաթիվ նամակներ է



բերում Կիրովաբադից ու Քութայիսից Լենինական։ Լենինականցիները սրտառուչ պատասխաններ են գրում իրենց աշխատանքի ընկերներին, պատմում մրցության մեջ իրենց ձեռք բերած հաջողությունների մասին։

Լենինականի տեքստիլագործները մրցելով Կիրովաբադի Ս. Օրջոնիկիձեի անվան տեքստիլ կոմբինատի կոլեկտիվի հետ, պարտավորվել են տարեկան պլանը կատարել 10 օր շուտ, երկրին պլանից դուրս տալ 7.000 տոննա մանվածք, տնտեսել 100 տոննա բամբակ, 100 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա և առաջին տեսակի արտադրանքը հասցնել 97 տոկոսի։

Լենինականցիները հաջողությամբ կատարում են իրենց խոստումը։ Կոմբինատի կոլեկտիվը զգալի հաջողությունների է հասել արտադրանքի որակի բարձրացման գործում։ Բազմաթիվ ցեխերում իսպառ վերացել է խոտանը։ Մի շարք բրիգադաներում առաջին տեսակի արտադրանքը հասնում է 99,7 տոկոսի, պլանով նախատեսված 94-ի փոխարեն։

Մրցության մեջ արտադրական լուրջ հաջողությունների են հասել քաղաքի նաև մյուս ձեռնարկությունները՝ Մոլոտովի անվան Մանարանի, Գուլպա-տրիկոտաժի ֆաբ-

թիկաները, հեծանիվի, մեխանիկական գործարանները, շոգեքարշային և վագոնային դեպոները և այլ ձեռնարկություններ։

Սոցիալիստական մրցությունը մեծ ծավալ է ստացել եղբայրական ռեսպուբլիկաների նաև կոլտնտեսականների միջև։ Կոլտնտեսային դաշտերի մարդիկ մրցում են բամբակի, ծխախոտի և այլ կուլտուրաների բարձր բերք ստանալու համար։

Մեկ ու կես տասնամյակից ավելի է, որ Հայկական ՍՍՌ Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյանի անվան կոլտնտեսության անդամները մրցում են Վրացական ՍՍՌ Մախարաձեի շրջանի Նաթանեբի գյուղի կոլտնտեսականների հետ։ Այդ մրցության շնորհիվ բարեկամական ջերմ հարաբերություններ են ստեղծվել երկու եղբայրական գյուղերի կոլտնտեսականների միջև։ Նրանք հաճախ այցելում են իրար, մշտական նամակագրության մեջ են։

Կիրովականի օկրուգի Իջևանի շրջանի ծխախոտագործները մրցում են Ադրբեջանի Ղազախի շրջանի ծխախոտագործների հետ, Արտաշատի բամբակագործները՝ Նախիջևանի ավտոնոմ ռեսպուբլիկայի Նորաշենի շրջանի բամբակագործների հետ և այլն։

Տարեց-տարի է՛լ ավելի է ամրապնդվում



Հայաստանի գիտնականների կապը Միության մյուս ռեսպուբլիկաների գիտնականների հետ։ Նրանք սերտ համագործակցած վճռում են գիտական մեծ արժեք ունեցող պրոբլեմներ։

Պարտիական կազմակերպությունները լուրջ նշանակություն են տալիս եղբայրական ռեսպուբլիկաների բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի միջև ստեղծված կապերի հետագա է՛լ ավելի ամրապնդմանը։ Եվ դա հասկանալի է, յուրաքանչյուր նամակ, բանվորների, կոլտնտեսականների ամեն մի հանդիպում ծնում են նոր մտքեր՝ ուղղված աշխատանքի բարելավմանը, է՛լ ավելի են ամրապնդում մեր ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը, օգնում են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործի հաջող կազմակերպմանը։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները հայրենասիրական մեծ խանդավառությամբ դիմավորեցին Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի որոշումները և ընկեր Ստալինի իմաստուն ճառը։ Այս օրերին ամեն մեկը ձգտում է ե՛լ ավելի լավ աշխատել, իր աշխա-

տանքով նպաստել մեր սիրելի Հայրենիքի հետագա ծաղկմանն ու ամրապնդմանը։

Հազարավոր ագիտատորներ շարունակում են մեծ եռանդով մասսայականացնել համագումարի որոշումները։ Նրանք մեծ ոգևորությամբ իրենց ունկնդիրներին պատմում են մեր երկրի սոցիալիստական ազգերի ձեռք բերած հոյակապ հաղթանակների մասին, դաստիարակում իրենց ունկնդիրներին սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով։

Նրանք օրինական հպարտությամբ կրկնում են ընկ. Լ. Պ. Բերիայի՝ համագումարի ամբիոնից արտասանած խոսքերը. «Ինչպես պատերազմում, այնպես էլ տնտեսական ու կուլտուրական խաղաղ շինարարության մեջ սովետական ժողովրդի հաղթանակների ձեռք բերման վճռական պայմաններից մեկը հանդիսացավ մեր պարտիայի իմաստուն հեռատես ազգային քաղաքականությունը»։

---



## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 32-րդ տարեդարձը Սովետական Հայաստանի աշխատավորության հետ միասին տնտեսական ու կուլտուրական նորանոր հաջողություններով է դիմավորում նաև Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի աշխատավորությունը։

Սովետական իշխանության օրոք, երբեմնի հետամնաց Փարաքարը կոլտնտեսային կյանքին անցնելու շնորհիվ, պատմական կարճ ժամանակամիջոցում դարձավ առաջնակարգ գյուղ, վերացվեց աղքատությունը և աշխատավորների համար ստեղծվեց ունևոր ու երջանիկ կյանք։

Մեր գյուղը տնտեսական և կուլտուրական մեծ վերելք ապրեց առանձնապես հետպատերազմյան ժամանակաշրջանում, երբ խոշոր չափով աճեց կոլտնտեսության գյուղա-

տնտեսական մթերքների համախառն արտադրանքը, մեքենայացման ենթարկվեցին գյուղատնտեսական գրեթե բոլոր աշխատանքները, ընդարձակվեց ջրովի հողերի տարածությունը, գյուղատնտեսության մեջ արմատավորվեցին միչուրինյան առաջավոր ագրո-բիոլոգիայի նվաճումները, բարձրացավ հողագործության կուլտուրան, ավելի քան ամրացվեց կոլտնտեսությունը՝ տնտեսապես և կազմակերպչորեն։

Լայնորեն ծավալելով սոցիալիստական գործարար մրցությունը, առանձնապես այս տարի մեր կոլտնտեսությունը զգալի հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների ավելացման, բերքատվության բարձրացման, հանրային անասունների գլխաքանակի ավելացման և նրանց մթերատվության բարձրացման ուղղությամբ։

Ընթացիկ գյուղատնտեսական տարում կոլտնտեսությունը մշակել է 145 հեկտար բամբակենու, 103 հեկտար հացահատիկային կուլտուրաների, 23 հեկտար բանջարա-բոստանային կուլտուրաների ցանք և 120 հեկտար խաղողի այգի։

Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի պատվին



ծավալված սոցիալիստական մրցությունը աշխատանքային նոր վերելք առաջացրեց մեր կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների մեջ։ Նրանք մեծ եռանդով լծվեցին գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքի աշխատանքներին, արդյունավետ կերպով օգտագործեցին աշխատանքային օրվա յուրաքանչյուր րոպեն, դրանով իսկ բարձրացավ կոլտնտեսականների աշխատանքի արտադրողականությունը, ավելի քան ամրապնդվեց և ուժեղացավ աշխատանքային կարգապահությունը։ Բավական է ասել, որ բերքահավաքի առաջին իսկ օրերից կոլտնտեսականները և կոլտնտեսուհիները կատարում և գերակատարում էին օրվա իրենց առաջադրանքները։ Առաջավոր կոլտնտեսականներ ընկ. ընկ. Հ. Առաքելյանը, Վ. Բաբաջանյանը, Թ. Ստեփանյանը և շատ ուրիշներ, բերքահավաքի ամբողջ սեզոնի ընթացքում օրական հավաքում էին 140-ից 150 կգ. բամբակ։

Մինչև նոյեմբերի 10-ը բամբակենու պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից հավաքվել է 26 ցենտներ բամբակ։ Չորրորդ բրիգադայի առաջին օղակը (օղակավար ընկ. Ն. Առաքելյան) 8 հեկտար տարածու-

թյան յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 40 ցենտներ բամբակ։

Կոլտնտեսությունն այս տարի անցյալ տարվանից 12 օր շուտ, առանց կորուստի, ավարտեց խաղողի բերքահավաքը և կրկնակի չափով ավելի բերք ստացավ, քան անցյալ տարի։

Ցորենի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսությունն ըստացել է 26 ցենտներ բերք։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել անասնաբուծության բնագավառում։ Կոլտընտեսությունն ունի կովաբուծական, ոչխարաբուծական, խոզաբուծական, թռչնաբուծական և մեղվաբուծական ֆերմաներ։ Կովերի գլխաքանակի աճեցման պլանը կատարվել է 105 տոկոսով, ոչխարներինը՝ 150 տոկոսով, խոզերինը՝ 200 տոկոսով, մեղուների ընտանիքներինը՝ 150 տոկոսով։

Զգալի չափով բարձրացել է անասունների մթերատվությունը։

Հաջողությամբ կատարվեցին և գերակատարվեցին պետական բոլոր տեսակի պարտավորությունները։ Բամբակի հումքի հանձնման պետական պլանը կատարվել է 100 տոկոսով, մինչև Հայաստանում սովետական



կարգերի հաստատման 32-րդ տարեդարձի օրը այն կկատարվի 107 տոկոսով։

Բազմակողմանիորեն նախապատրաստվեց և ժամանակին կատարվեց աշնանացանը, լրիվ կատարվեց վաղ ցելը, ցրտահերկը, ցանքահողերը սնուցվեցին մեծ քանակությամբ օրգանական և հանքային պարարտանյութերով։

Լավագույն կերպով է նախապատրաստվել անասունների ձմեռումը, լրիվ կերպով ապահովվել է անասնակերը, վերանորոգվել են անասնագոմերը և այս տարի կառուցվել են չորս նոր գոմ։

Ընթացիկ տարում զգալի չափով աճել է կոլտնտեսության եկամուտը, հասնելով մինչև 7 միլիոն ռուբլու, որից միայն դրամականը՝ 2,7 միլիոն։ Դրա շնորհիվ աճել է կոլտնտեսության հանրային ֆոնդը և ավելացել են կոլտնտեսականների աշխօրերին բաշխվելիք եկամուտները։ Այս տարի մեր կոլտնտեսականները յուրաքանչյուր աշխօրին ստանում են 11 ռուբլի դրամ և ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ, քան անցյալ տարի։

Կոլտնտեսական ընկ. Ալեքսան Վարդանյանի ընտանիքը (որը բաղկացած է 6 հոգուց), վաստակել է 1.000 աշխօր, այդ աշ-

խորերի դիմաց նա կստանա 11.000 ռուբլի դրամ, 600 լիտր գինի, 2.200 կգ. հացահատիկ և մեծ քանակությամբ այլ մթերքներ։ Այդպիսի առատ եկամուտներ են ստանում մեր կոլտնտեսականներից շատ շատերը։

Ավելի ու ավելի է գեղեցկանում և կուլտուրական դառնում մեր գյուղը։ Միայն այս տարի գյուղում կառուցվել են 20-ից ավելի մեկ հարկանի և երկհարկանի լուսավոր բնակարաններ։ Գյուղում գործում են միջնակարգ դպրոց, գրադարան, բուժարան և ծննդատուն։ Բոլոր կոլտնտեսականներն իրենց բնակարաններում էլեկտրական լուսավորություն և ռադիո են անցկացրել։

Ավելի մեծ են մեր կոլտնտեսության հեռանկարները։ Մենք Ստալինյան հինգերորդ հնգամյակի պլանի մեջ տեսնում ենք մեր ավելի երջանիկ ապագան, տեսնում ենք մեր սոցիալիստական դաշտերի է՛լ ավելի առատ բարիքները։ Մեր կոլտնտեսականները պարտավորվում են ագրոտեխնիկայի բարելավման միջոցով հասնել բամբակի, ցորենի, խաղողի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների առավել բարձր բերքատվության։

Կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը կոնկրետ մի-



ջոցառումներ են նշել նոր հնգամյակի երրորդ տարում է՛լ ավելի բարելավելու հողամշակման ագրոտեխնիկան։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը ագիտատորների միջոցով քաղաքական-մասսայական լայն աշխատանք ծավալելով, կոլտնտեսականների սեփականությունն է դարձնում պարտիայի 19-րդ համագումարում ընկեր Ստալինի արտասանած պատմական ճառը, ընկեր Մալենկովի հաշվետու զեկուցումը և համագումարի դիրեկտիվները, մոբիլիզացնում է նրանց ուժերը պատվով կատարելու Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները։

Հայաստանում սովետական իշխանության հաստատման 32-րդ տարեդարձը մեր կոլտնտեսականները և կոլտնտեսուհիները դիմավորում են նորանոր հաջողություններով։

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ
(Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի Ա. Ի. Միկոյանի անվան կոլտնտեսության վարչության նախագահ)

## ԿԵՆՍԱԳՈՐԾՎՈՒՄ ԵՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Օրերս մամուլում հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական Վարչության հաղորդագրությունը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1952 թվականի երրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։*

*Հաղորդագրության մեջ բերված թվերն ու տվյալները վառ կերպով ցույց են տալիս այն խոշոր հաջողությունները, որ Լենինի—Ստալինի պարտիայի իմաստուն ղեկավարությամբ ձեռք է բերել մեր ժողովուրդը երկրի տնտեսական նոր վերելքի ասպարեզում՝ 1952 թվականի նախավերջին քառորդում։*

*Երրորդ եռամսյակի պլանների կատարման գործում ձեռք բերված հաջողությունները արդյունք են արտադրական և քաղաքական այն աննախընթաց վերելքի, որ ստեղծվեց երկրում Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 19-րդ համագումարի հրա-*



*վիրման կապակցությամբ։ Համագումարի պատվին ծավալելով համաժողովրդական լայն մրցություն, մեր երկրի աշխատավորները հարազատ պարտիայի համագումարը նշանավորեցին արտադրական նորանոր հաղթանակներով։*

*ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականի երրորդ եռամսյակում, 1951 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ, աճել է 11 տոկոսով։ Արտադրանքի թողարկման այս աճը լուրջ նվաճում է հանդիսանում, մանավանդ եթե հաշվի առնենք, որ արտադրանքի ավելացման ամեն մի տոկոսը հինգերորդ հնգամյակում ավելի մեծ ծավալ է ներկայացնում, քան չորրորդ հնգամյակում։*

*Առավել մեծ են արտադրության միջոցներ արտադրող արդյունաբերության հաջողությունները երրորդ եռամսյակում։ Արտադրանքի թողարկման պլանը գերակատարել են ծանր արդյունաբերության կարևորագույն ճյուղերը՝ սև մետալուրգիան, ածխային և նավթային արդյունաբերությունը, էլեկտրակայանները, քիմիական արդյունաբերությունը և այլն։ Ընթացիկ տարում արտադրության միջոցների արտադրությունը մոտավո-*

րապես 2,7 անգամ կգերազանցի նախապատերազմյան մակարդակը։

Մեր արդյունաբերությունը անընդհատ, ամսե-ամիս, եռամսյակից-եռամսյակ ավելացնում է արտադրանքի թողարկումը։ Այդ գործում կարևորագույն դեր է խաղում աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Բավական է ասել, որ հինգերորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի ամբողջ աճի մոտ երեք քառորդը ստացվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Երրորդ եռամսյակում արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի արտադրողականությունը անցած տարվա երրորդ եռամսյակի համեմատությամբ աճել է վեց տոկոսով։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերել նաև սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները։ 1952 թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց 8 միլիարդ փութ, այսինքն 600 միլիոն փթով ավելի, քան անցյալ տարի։ Այս տարի հացահատիկի առավել բարձր բերք է ստացվել Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում և Ղրիմում։ Անցյալ տարվանից ավելի բարձր բերք է ստացվել նաև երկրի ուրիշ շատ շրջաններում։



1951 թվականի համեմատությամբ ավելացել է նաև բամբակի, շաքարի ճակնդեղի, թելավուշի, արևածաղկի և կարտոֆիլի համախառն բերքը։

Արդյունաբերության և գյուղատնտեսության աճման հիման վրա անշեղորեն բարձրանում է աշխատավորների նյութական բարեկեցությունը։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, ինչպես գրում է «Պրավդա»-ն, որ սոցիալիստական արտադրության նպատակը ոչ թե շահույթն է, այլ մարդը՝ իր պահանջմունքներով, այսինքն նրա նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարումը։

Իր «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատության մեջ ընկեր Ստալինը նշում է, որ «Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի էական գծերն ու պահանջները կարելի էր ձևակերպել մոտավորապես այսպես. ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման ապահովում՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով»։ Այդ օրենքի անշեղ կենսագործման վառ արտա-

հայտությամն է հանդիսանում սովետական մարդկանց նյութական բարեկեցության անընդհատ աճը։ Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրության մեջ ասված է. «1952 թվականի երրորդ եռամսյակում շարունակվում էր սովետական առևտրի հետագա ծավալումը։ Պետական և կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառված են 10 տոկոսով ավելի շատ ապրանքներ, քան 1951 թվականի երրորդ եռամսյակում։

Առանձին ապրանքների վաճառքն ավելացել է հետևյալ չափերով. միս՝ 17 տոկոսով, ձկնամթերքներ՝ 20 տոկոսով, յուղ՝ և այլ ճարպեր՝ 25 տոկոսով, պանիր՝ 21 տոկոսով, ձու՝ 24 տոկոսով, շաքար՝ 31 տոկոսով, հրուշակեղեն՝ 15 տոկոսով, բամբակե գործվածքներ՝ 27 տոկոսով, պատրաստի հագուստեղեն՝ 19 տոկոսով, կաշվե կոշկեղեն՝ 24 տոկոսով, լվացքի օճառ՝ 14 տոկոսով, ձեռքի օճառ՝ 31 տոկոսով, հեծանիվներ՝ 12 տոկոսով, լուսանկարչական ապարատներ՝ 33 տոկոսով, կարի մեքենաներ՝ 11 տոկոսով, ժամացույցներ՝ 5 տոկոսով։

1952 թվականի երրորդ եռամսյակում, 1951 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է բնակչությանը



գյուղատնտեսական մթերքների, առանձնապես կենդանական յուղի, ձվի, թռչունների, բանջարեղենի, ցորենի ալյուրի, կրուպայի վաճառքը կոլտնտեսային շուկաներում»։

1952 թվականի երրորդ եռամսյակում արտադրական խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև մեր ռեսպուբլիկայում։

Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հաղորդագրության համաձայն՝ Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարվել է 102 տոկոսով, այդ թվում միութենական ենթակայության ձեռնարկություններում՝ 101 տոկոսով և ռեսպուբլիկական ենթակայության ձեռնարկություններում՝ 103 տոկոսով։

Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականի երրորդ եռամսյակում, համեմատած 1951 թվականի երրորդ եռամսյակի հետ, աճել է 10 տոկոսով։

Նշանակալից են սոցիալիստական գյուղատնտեսության հաջողությունները։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մինչև 1952 թվականի հոկտեմբերի 1-ը հավաքվել էր 11 տոկոսով ավելի և կալսվել էր 21 տոկոսով ավելի հացահատիկային կուլտուրա,

*քան 1951 թվականի համապատասխան ժամանակաշրջանում։*

*Աշնանացան հասկավոր կուլտուրաներ ցանվել են 6 տոկոսով ավելի, քան 1951 թվականին, այդ թվում ցորեն ցանվել է 7 տոկոսով ավելի։*

*Տարեց-տարի բարձրանում է գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը։ 1952 թվականին ռեսպուբլիկայի ՄՏ կայանները կոմբայններով հավաքել են 16 տոկոսով ավելի հացահատիկային կուլտուրաներ և 24 տոկոսով ավելի աշխատանք են կատարել, քան 1951 թվականի նույն ժամանակաշրջանում։*

*Պարտիայի 19-րդ համագումարի որոշումները և համագումարի եզրափակիչ նիստում ընկեր Ստալինի արտասանած պատմական ճառը աշխատանքային չտեսնված ոգևորություն են առաջ բերել ամբողջ երկրում։*

*Զինված պարտիայի 19-րդ համագումարի որոշումներով, մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ցուցումներով, սովետական ժողովուրդը ստեղծագործական աշխատանք է ծավալում ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու ստալինյան հինգերորդ հնգամյակի պլանները՝ կոմունիզմի կառուցման ստալինյան ծրագիրը։*

Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

---

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

### (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

✪ *1952 թվականին ՍՍՌՄ-ում հացահատիկի համախառն բերքը կազմեց 8 միլիարդ փութ, իսկ ցորենի համախառն բերքը 1940 թվականի համեմատությամբ ավելացավ 48 տոկոսով։ Այսպիսով, հացահատիկային պրոբլեմը մեզ մոտ լուծված է վերջնականապես և անվերադարձորեն։*

✪ *ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյակում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը նախատեսված է ավելացնել 40—50 տոկոսով, ընդորում ցորենի արտադրությունը պետք է աճի 55—65 տոկոսով։ Անդրկովկասի շրջաններում նախատեսվում է հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը մեկ հեկտարից բարձրացնել մինչև 20—22 ցենտների և ջրովի հողերում մինչև 30—34 ցենտների։*

✪ *Սովետական Միության ամբողջովին*

ապահովված է գյուղատնտեսական հիմնական մթերքներով, իսկ մի շարք կարևորագույն կուլտուրաներով, ինչպես, օրինակ, ցորենով, տարեկանով, գարով, վարսակով, վուշով և շաքարի ճակնդեղով Սովետական Միությունն առաջին տեղն է բռնում աշխարհում։

✪ Անցած հնգամյակում շաքարի ճակնդեղի համախառն բերքը ավելացավ 2,7 անգամ, արևածաղկինը՝ 70 տոկոսով։ Նոր հնգամյակի վերջում նախատեսված է, 1950 թվականի համեմատությամբ, շաքարի ճակնդեղի արտադրությունը ավելացնել 65—70 տոկոսով, արևածաղկինը՝ 55—60 տոկոսով։

✪ Հինգերորդ հնգամյակում մեծ ուշադրություն է դարձվելու տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման և բերքատվության բարձրացման վրա։ Եթե ՍՍՌՄ-ում 1952 թվականին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել են 1,4 անգամ, ըստ որում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները ավելացել են 5 տոկոսով, ապա տեխնիկական և բանջարա-



բոստանային կուլտուրաների ցանքատարածությունները ավելացել են ավելի քան 2,4 անգամ, իսկ կերային կուլտուրաներինը՝ ավելի քան 11 անգամ։ Դաշտավարության ապրանքային արտադրանքի ընդհանուր արժեքից ներկայումս ավելի քան 40 տոկոսը բաժին է ընկնում տեխնիկական կուլտուրաներին։

✪ Նոր հնգամյակում նախատեսվում է բամբակենու մեկ հեկտարի բերքատվությունը հասցնել Միջին Ասիայի և Հարավային Ղազախստանի շրջաններում 26—27 ցենտների, Անդրկովկասի շրջաններում՝ 25—27 ցենտների։

1951 թվականին արևելքի սովետական ռեսպուբլիկաներում բամբակի բերքատվությունը միջին հաշվով կազմեց հեկտարից 21 ցենտներ։ Աշխարհում բամբակ մշակող ոչ մի երկրում չկա այնպիսի բերքատվություն, որին հասել են սովետական բամբակագործները։ Այդ նույն 1951 թվականին բամբակի բերքատվությունը Եգիպտոսում կազմեց հեկտարից 11,5 ցենտներ, ԱՄՆ-ում՝ 8,3, Հնդկաստանում՝ 3,4 Պակիստանում՝ 5,2, Թյուրքիայում՝ 7,2, Իրանում՝ հեկտարից 4,5 ցենտներ։

✪ Հինգերորդ հնգամյակում նախատեսվում

է ավելացնել կարտոֆիլի արտադրությունը 50 տոկոսով՝ սպիրտի և օսլա-շարապի գործարանների գոտիներում, բանջարեղենի արտադրությունը պահածոների և բանջարեղենի չորացման գործարանների գոտիներում՝ 2 անգամ։ Կարտոֆիլի բերքատվությունը բարձրացվելու է մինչև 125-ից 175 ցենտների՝ մեկ հեկտարից։

✪ 1945 թվականի հուլիսից մինչև 1952 թվականի հուլիսն ընկած ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 13,4 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 41,8 միլիոն գլխով, խոզերինը՝ 21,2 միլիոն գլխով և ձիերինը՝ 5,6 միլիոն գլխով։ Ստալինյան հինգերորդ հնգամյակում նախատեսվում է խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել ամբողջ գյուղատնտեսության մեջ 18—20 տոկոսով, այդ թվում կոլտնտեսություններում խոշոր եղջերավոր անասուններինը՝ 36—38 տոկոսով և կովերինը մոտավորապես երկու անգամ։ Ոչխարների գլխաքանակը ամբողջ գյուղատնտեսության մեջ 60—62 տոկոսով, այդ թվում կոլտնտեսություններում՝ 75—80 տոկոսով, խոզերինը՝ ամբողջ գյուղատնտեսության մեջ 45—50 տոկոսով, այդ թվում կոլտնտեսություննե-



րում՝ 85—90 տոկոսով, թռչունների թիվը կոլտնտեսություններում 3—3,5 անգամ, ձիերի գլխաքանակը՝ ամբողջ գյուղատնտեսության մեջ 10—12 տոկոսով, այդ թվում կոլտնտեսություններում՝ 14—16 տոկոսով։

✪ Նոր հնգամյակում նախատեսվում է անասնապահության մթերքների քանակը, 1950 թվականի համեմատությամբ ավելացնել. միսինը և ճարպինը՝ 80—90 տոկոսով, կաթինը՝ 45—50 տոկոսով, բրդինը՝ մոտավորապես 2,—2,5 անգամ, այդ թվում նուրբ բրդինը՝ 4—4,5 անգամ, ձվինը (կոլտնտեսություններում և սովխոզներում 6—7 անգամ)։ Մեկ կովի կաթնատվությունը Անդրկովկասի շրջանների կոլտնտեսություններում հասցնել 900—1.000 կիլոգրամի, իսկ տոհմաբուծական սովխոզներում՝ 2.100—2.600 կիլոգրամի։

✪ Սովետական Միությունն իր գյուղատնտեսության մեխանիզացիայով աշխարհում բռնում է առաջին տեղը։ 1938 թվականին սոցիալիստական դաշտերում աշխատում էր 483,5 հազար տրակտոր։ Հետպատերազմյան չորրորդ հնգամյակում սոցիալիստական գյուղատնտեսությունը ստացավ 536 հազար տրակտոր՝ 15 ուժայինի վերածած, 93 հազար կոմբայն, այդ թվում 39 հազար ինք-

նադնաց կոմբայն, 341 հազար տրակտորային գութան, 254 հազար տրակտորային շարքացան, 249 հազար տրակտորային կուլտիվատոր և այլ գյուղատնտեսական մեքենաներ։

✪ Սովետական Ուզբեկստանում ցանքատարածության յուրաքանչյուր հազար հեկտարին ընկնում է 14 տրակտոր, մինչդեռ Ֆրանսիայում նույնքան տարածությանը ընկնում է շատ ավելի պակաս կարողություն ունեցող 7 տրակտոր, իսկ Իտալիայում՝ 4 տրակտոր։ Եթե Ուզբեկական ՍՍՌ-ում մեկ տրակտոր է ընկնում 70 հեկտար ցանքատարածության, ապա Պակիստանում մեկ տրակտոր է ընկնում 9 հազար հեկտարին, Հնդկաստանում՝ 13 հազար հեկտարին, Իրանում՝ 18 հազար հեկտարին։

✪ Նոր հնգամյակում նախատեսված է տրակտորային պարկի կարողությունն ավելացնել մոտավորապես 50 տոկոսով։ 1955 թ. հացահատիկային, տեխնիկական ու կերային կուլտուրաների վարի, ցանքի մեքենայացման մակարդակը նախատեսվում է հասցնել 90—95 տոկոսի, հացահատիկային կուլտուրաների և արևածաղկի կոմբայնային բերքահավաքինը՝ 80—90 տոկոսի, շաքարի ճակնդեղի բերքահավաքինը՝ 90—95



տոկոսի, բամբակի հումքի բերքահավաքինը՝ 60—70 տոկոսի, գանգրավուշի ցանքինն ու բերքահավաքինը՝ 80—90 տոկոսի, կարտոֆիլի տնկմանը, միջշարքային մշակությանը և բերքի հավաքմանը՝ 55—60 տոկոսի, խոտհնձինն ու սիլոսացմանը՝ 70—80 տոկոսի։

✪ ՍՍՌՄ-ում կոլտնտեսային կարգի հաղթանակից հետո սոցիալիստական գյուղատնտեսությունը ամուր կանգնեց անընդհատ վերելքի ուղու վրա։ Կոլտնտեսային կարգի շնորհիվ մեր հայրենիքում մենք այժմ ունենք խոշոր, բարձր-ապրանքային սոցիալիստական գյուղատնտեսություն, որը լայնորեն կիրառում է ագրոնոմիական գիտության նորագույն նվաճումները և ժամանակակից տեխնիկայով հագեցված է ավելի լավ, քան որևէ այլ երկրում։

✪ ԱՄՆ-ում տրակտոր գործադրող տնտեսությունների թիվը կազմում է բոլոր տնտեսությունների ընդհանուր թվի 28,3 տոկոսը միայն, ՍՍՌՄ-ում դեռ 1937 թվականին մեքենատրակտորային կայանները սպասարկում էին կոլտնտեսությունների ամբողջ ցանքատարածության 91,5 տոկոսը։

✪ Սովետական Միությունում վիթխարի աշխատանքներ է կատարվում բնության վերափոխման ստալինյան պլանը իրագործելու համար։ 1948 թվականից մեծ աշխատանքներ են կատարվում ՍՍՌՄ Եվրոպական մասի տափաստանային և անտառատափաստանային շրջաններում պետական դաշտապաշտպան խոշոր անտառաշերտեր ստեղծելու, լճակներ և ջրամբարներ կառուցելու ուղղությամբ։ Վերջին երեք և կես տարվա ընթացքում կոլտնտեսությունները, սովխոզները և անտառային տնտեսությունները դաշտապաշտպան անտառաշերտեր են տնկել 2,6 միլիոն հեկտար տարածության վրա։

✪ Գյուղատնտեսության համար մեծ հեռանկարներ են բացվում Վոլգայի, Դոնի, Դնեպրի և Ամու-Դարյայի վրա վիթխարի հիդրոէլեկտրակայանների ու ոռոգիչ սիստեմների կառուցման կապակցությամբ և Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի գործարկման կապակցությամբ։ Այդ կայանների և ոռոգիչ սիստեմների կառուցումը կապահովի վեց միլիոնից ավելի հեկտար տարածությամբ նոր հողերի ոռոգումը, այսինքն այնքան, որքան մեր երկրում մինչև օրս ոռոգվել է։ Դրանից



բացի, 22 միլիոն հեկտար ջրարբի կդառնա, որը խոշոր չափով կավելացնի կերի բազան անասնապահության համար։ Կոմունիզմի մեծ կառուցումների կենսագործման հետևանքով սոցիալիստական գյուղատնտեսության առջև բացվում են լայն հնարավորություններ գյուղատնտեսական արտադրության էլեկտրաֆիկացման, էլեկտրահերկի արմատավորման, էլեկտրակոմբայնների և գյուղատնտեսական էլեկտրաշարժ այլ մեքենաների կիրառման համար։

✪ Ոռոգիչ և ջրովի դարձվող տարածությունների ընդլայնումը հնարավորություն կտա լրացուցիչ կերպով արտադրել 3 միլիոն տոննա բամբակի հումք, որը կազմում է ԱՄՆ-ում բամբակի տարեկան միջին արտադրության ավելի քան մեկ երրորդը, կես միլիարդ փութ ցորեն, 30 միլիոն փութ բրինձ և 6 միլիոն փութ շաքարի ճակնդեղ։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կավելանա այդ շրջաններում 2 միլիոնով և ոչխարներինը՝ 9 միլիոնով։

✪ Հնգամյակի ընթացքում նախատեսվում է ոռոգելի հողերի տարածությունն ավելացնել 30—35 տոկոսով, կոլտնտեսություններում ու սովխոզներում կառուցել 30—35 հազար լճակ ու ջրամբար և ապահովել նրանց տնտեսական բազմակողմանի օգտագործումը։ 1951—1955 թվականներին ցամաքեցվող հողերի տարածությունը ավելանալու է 40—45 տոկոսով։

✪ Գյուղատնտեսական արտադրության նախատեսվող աճն ապահովելու համար նոր հնգամյակում գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը սահմանվում է մոտավորապես 2,1 անգամ ավելի, ընդ որում իրրիգացիայի և մելիորացիայի համար մոտավորապես 4 անգամ ավելի, քան չորրորդ հնգամյակում։

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՖԱՇԻՍՏԱԿԱՆ-ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ԿԱՄԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՄՆ-ՈՒՄ

Ֆաշիստացման պրոցեսն ընդգրկել է Ամերիկայի Միացյալ Նահանգների կյանքի բոլոր կողմերը, Ամերիկայի, որը դարձել է միջազգային ռեակցիայի կենտրոնը, դարձել է ոստիկանական պետություն։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները, որոնք համաշխարհային երրորդ պատերազմ են նախապատրաստում, իրենց թիկունքն ամրապնդում են գազանային ֆաշիստական մեթոդներով։ Նրանք փորձում են տեռորի օգնությամբ ընկճել իրենց իմպերիալիստական քաղաքականությանը դեմ գնացող ժողովրդի դիմադրությունը, ջախջախել երկրում խաղաղության և դեմոկրատիայի օգտին ծավալվող շարժումը։

1927 թվականին հանդես գալով ՀամԿ(բ)Պ 15-րդ համագումարում, Ի. Վ. Ստալինն ասաց. «Պատերազմ մղելու համար բավական չէ սպառազինումների աճումը, բավական չէ նոր կոալիցիաների կազմակերպումը։ Դրա համար անհրաժեշտ է նաև թիկունքի ամրապնդումը կապիտալիզմի երկրներում։ Ոչ մի կապիտալիստական երկիր չի կարող լուրջ պատերազմ մղել, նախապես չամրապնդելով իր սեփական թիկունքը, չսանձահարելով «իր» բանվորներին, չսանձահարելով

ձիրը գաղութները։ Այստեղից էլ բուրժուական կառավարությունների քաղաքականության աստիճանական ֆաշիզացիան։

Վերջին ժամանակներս, Կորեայում շարունակվող ագրեսիայի նկատմամբ ամերիկյան ժողովրդի լայն մասսաների դժգոհության աճման կապակցությամբ էլ ավելի է ուժեղացել ԱՄՆ-ի ռեակցիոներների հարձակումը աշխատավորների դեմոկրատական իրավունքների մնացորդների դեմ։ Ամերիկյան հայտնի պրոգրեսիվ գործիչ Կորլիս Լամոնտը վերջերս «Դեյլի Կոմպաս» թերթում գրել է. «Դեռ երբեք Միացյալ Նահանգների պատմության մեջ ամերիկյան ազատությունները չեն ոտնահարվել այնպիսի լայն մասշտաբներով, ինչպես այժմ... Ամերիկյան ոչ մի քաղաքացի չի կարող հրապարակորեն հանդես գալ տիրող իդեոլոգիայի դեմ կամ իր ցանկությամբ մտնել զանազան կազմակերպությունների մեջ, առանց դրանով իսկ վտանգի ենթարկելու իր կոնստիտուցիոն իրավունքները, իր անունը, իր գոյության միջոցներն ու իր ազատությունը, ինչպես նաև առանց պատժվելու և բանտ նետվելու վտանգի»։

Ամերիկայի հասարակական գործիչներից մեկի, խաղաղության կողմնակիցների շարժման մասնակցի այս կարծիքը, այն մարդու, որն անձամբ ենթարկվում է հալածանքների, ակնառու կերպով ցույց է տալիս այն մռայլ իրադրությունը, որ տիրում է Միացյալ Նահանգներում։



Երկրում խաղաղության ամեն մի ձգտումը, ամեն մի առաջադեմ միտքը խեղդելու իրենց փորձերում ամերիկյան իմպերիալիստները օգտագործում են ամենաբազմազան մեթոդներ, այդ տեսակետից գերազանցելով նույնիսկ հիտլերականներին։ Նրանք ստեղծել են բազմաթիվ հիմնարկներ, որոնց խնդիրն է հետապնդել երկրի առաջավոր մարդկանց, սարսափ տարածել բնակչության մեջ։ «Հակաամերիկյան» գործունեությունը հետաքննող հանձնաժողով, ներքին անվտանգության հարցերի սենատական ենթահանձնաժողով, քայքայիչ գործունեության վերահսկիչ վարչություն, պետական ծառայողների լոյալության ստուգող վարչություն, հետաքննությունների ֆեդերալ բյուրո՝ ահա առավել հայտնի այն հիմնարկները, որոնք գործում են երկրում՝ որպես ամերիկյան ֆաշիզմի գործիք։ Դրանց պետք է ավելացնել հազարից ավելի ռեակցիոն, ֆաշիստական այլ կազմակերպություններ, որոնց վրա խնդիր է դրված՝ պայքարել առաջադիմական շարժման դեմ և ամերիկյան պահնորդական բաժնին՝ ֆեդերալ բյուրոյին լրտեսական տեղեկություններ հաղորդել ամերիկյան ժողովրդի շահերի համար պայքարող իսկական դեմոկրատների մասին։

Ամերիկյան ռեակցիան իր առաջին և գլխավոր հարվածն ուղղել է կոմունիստական պարտիայի դեմ, որը հանդիսանում է հիմնական, առաջատար ուժը խաղաղության համար, ընդդեմ ֆաշիզմի մղվող պայ-

քարում» Նպատակ ունենալով խափանել կոմունիստական պարտիայի գործունեությունը, ռեակցիոն շրջանները բանտ են նետում նրա ղեկավարներին։

Ինչպես հայտնի է, 1951 թվականին դատական երկարատև խաղից հետո բանտ նետվեցին Կոմպարտիայի ազգային կոմիտեի մի խումբ անդամներ՝ գլխավոր քարտուղար Յուջին Դեննիսի գլխավորությամբ։ Դրանից հետո ԱՄՆ-ի կառավարող շրջանները ուժեղացրին կոմպարտիայի ղեկավար գործիչների, բառիս բուն իմաստով, որսը նահանգներում։ Ինչ-որ երկու ամսվա ընթացքում ձերբակալվեցին կոմպարտիայի կազմակերպությունների ղեկավարները Կալիֆորնիա, Մերիլենդ, Նյու-Յորք, Պենսիլվանիա նահանգներում, Հավայան կղզիներում և այլն։ Դատական իշխանությունները միաժամանակ չորս խոշոր դատավարություն կազմակերպեցին կոմունիստական գործիչների նկատմամբ, նրանց կեղծ մեղադրանք ներկայացնելով կառավարության դեմ դավադրություն սարքելու մեջ։ Նրանցից շատերի նկատմամբ արդեն կայացվել են հրեշավոր դատավճիռներ։ Այսպես, Արևմտյան Պենսիլվանիայի կոմպարտիայի կազմակերպության նախագահ Ստիվ Նելսոնը դատապարտված է 20 տարվա բանտարկության և 10 հազար դոլար դրամական տուգանքի։ Երկարատև բանտարկության և դրամական խոշոր տուգանքների են դատապարտվել կոմպարտիայի Կալիֆորնիայի կազմակերպության 14 ղեկավարներ։ Նման վախճան է ունեցել նաև Մերի-



լենդ նահանգի կոմպարտիայի 5 գործիչների նկատմամբ կազմակերպված դատը։ Ավարտման վրա է Նյու-Յորքի 16 կոմունիստների դեմ սարքված դատական խաղը։

Կոմունիստների բանտարկությունները շարունակվում են։ Բոլորովին վերջերս, այս տարվա սեպտեմբերի կեսերին, կոմպարտիայի կազմակերպությունների 18 ղեկավարներ ձերբակալվեցին Միչիգան, Միսսուրի, Իլինոյս և այլ նահանգներում։ Պրեզիդենտի պոստի համար կապիտալիստական մոնոպոլիաների առաջադրած թեկնածուներ Էյզենհաուերը և Ստիվենսոնը, ինչպես նաև պրեզիդենտ Տրումենը իրենց նախընտրական ճառերում կոչ էին անում նոր արշավ սկսել կոմպարտիայի դեմ։

Սակայն ռեակցիան հարձակվում է ոչ միայն կոմունիստական պարտիայի վրա։ Նա արշավանք է ծավալել նաև պրոգրեսիվ պրոֆմիությունների և հասարակական գործիչների դեմ։ «Հակաամերիկյան» գործունեությունը հետաքննող հանձնաժողովը Արևմտյան ափի էլեկտրա և ռադիոարդյունաբերության, լեռնահանքային արդյունաբերության բանվորների և ձուլողների ու բեռնակիրների պրոգրեսիվ պրոֆմիությունների ղեկավարության գործունեության այսպես կոչված հետաքննության պատրվակի տակ, այս տարվա փետրվարից արշավանք է սկսել այդ պրոֆմիությունների դեմ։ Հանձնաժողովի նպատակն է՝ գլխատել այդ միությունները և վերջի վերջո հասնել դրանց

թուլացմանն ու կազմալուծմանը։ Օրինակ՝ հայտնի պրոգրեսիվ գործիչ, Արևմտյան ափի բեռնակիրների պրոֆմիության ղեկավար Հարի Բրիջեսին, որը վերջերս է ազատվել բանտից, առաջարկված է մեկնել ԱՄՆ-ից։ Սկսում է նման «հետաքննության» ենթարկվել նաև լեռնահանքային արդյունաբերության պրոֆմիության նախագահ Կլարկի գործունեությունը։

Միաժամանակ մոլեգնում է այսպես կոչված՝ պետական ծառայողների լոյալության ստուգող վարչությունը։ Այդ վարչությունը նվաստացուցիչ «հետաքննության» է ենթարկել և «ստուգել» երեք միլիոն մարդու բարեհուսությունը։ Դրա հետևանքով հազարավոր մարդիկ զրկվել են աշխատանքից և մտցվել «անբարեհույսների» սև ցուցակների մեջ։ Դրանց մեջ կան նույնիսկ Միավորված Ազգերի Կազմակերպության ծառայողներ։ Վերջին տվյալներով՝ ՄԱԿ-ի քարտուղարությունից հեռացվել են 100 ամերիկացիներ, որոնք անբարեհույս են համարվել ԱՄՆ-ի ռեակցիոներների կողմից։

Ամերիկյան մամուլի վկայությամբ՝ իրենց առաջադիմական հայացքների համար հալածվում և հետապնդվում են ամերիկյան մոտ կես միլիոն գրողներ, գիտնականներ, արվեստագետներ, բժիշկներ, պրոֆմիությունների ղեկավարներ և այլն։

Ռեակցիան մոլեգնում է դպրոցներում և ինստիտուտներում։ Այս տարվա մարտին Նյու-Յորք նահանգում գործողության մեջ է մտցվել Ֆեյնբերգի օ-



րենքը, որի համաձայն առաջադիմորեն տրամադրված մարդկանց արգելվում է նահանգի դպրոցներում դասավանդել։ Այդ օրենքի հիման վրա Նյու-Յորքի դպրոցներում ուսուցիչները մասսայորեն հեռացվում են աշխատանքից։ Ներկայումս դատավարություն է պատրաստվում հայտնի գիտնական-մաթեմատիկոս, պրոֆեսոր Դյերկ Ստրուիկի դեմ, որը վերջերս հեռացվել է Մասսաչուզետս նահանգի ինստիտուտից։ Հեռացման պատճառն այն է, որ Ստրուիկը մասնակցել է պրոգրեսիվ շարժմանը և ուսանողների մեջ մարքսիզմի գաղափարների տարածմանը։ Պրոգրեսիվ կազմակերպությունները կամպանիա են ծավալում ի պաշտպանություն Ստրուիկի։

Ամերիկյան ռեակցիան ձգտում է ընդհանուր սարսափի մթնոլորտ ստեղծել Միացյալ Նահանգներում։ Այդ բանն ստիպված էր խոստովանել անգամ ԱՄՆ-ի գերագույն դատարանի անդամ Դուգլասը։ Այս տարվա գարնանը Ֆիլադելֆիայում արտասանած իր ճառում նա հայտարարեց, որ ԱՄՆ-ում «ամեն ոք— ով չի հետևում ռազմական քաղաքականության, կասկածի տակ է գտնվում»։ «ԱՄՆ-ում աճում է ահ ու սարսափը,— շարունակել է Դուգլասը,— աշխատանքը կորցնելու սարսափը, հետապնդման ենթարկվելու սարսափը, անարգանքի սյունին գամվելու սարսափը։ Այդ սարսափը նույնիսկ մուտք է գործել համալսարանները... և քայքայել նրանց։ Մենք տեսնում ենք, թե ինչպես համալսարաններում ադմինիստրացիան

զբաղվում է ամենազզվելի ինկվիզիցիայով, որպիսին երբևէ եղել է մեր երկրում»։

Ամերիկյան ռեակցիան չի սահմանափակվում մարդկանց սոսկ աշխատանքից հեռացնելով և սև ցուցակների մեջ մտցնելով։ Նա գործադրում է ֆիզիկական բռնություն, օգտագործելով ֆաշիստական բանդաներին, ծեծի է ենթարկում խաղաղության կողմնակիցների և պրոգրեսիվ կազմակերպությունների կողմից հրավիրվող միտինգների ու ժողովների մասնակիցներին։

Առանձնապես հաճախակի են դարձել ֆաշիստական խուլիգանների հարձակումները դեմոկրատական կազմակերպությունների և, մասնավորապես, պրոգրեսիվ պարտիայի կողմից հրավիրվող միտինգների վրա։ Հուլիսի 31-ին և օգոստոսի 7-ին ֆաշիստական «ամերիկյան լեգիոնի» բանդիտները, օգտվելով ոստիկանության լիակատար աջակցությունից, հարձակվեցին ամերիկյան բանվորական պարտիայի կողմից Նյու-Յորքի շրջաններից մեկում հրավիրված միտինգի վրա։ Խուլիգանները միտինգի մասնակիցներին ծեծել են մահակներով և ծայրերին մեխեր ունեցող փայտերով։ Նրանք ծեծել և ոտնատակ են տվել կանանց ու երեխաներին։ Երբ օգոստոսի 7-ի միտինգի կազմակերպիչներից մեկը դիմում է ոստիկանությանը, նրան ծեծում են ոստիկանները։

Միտինգների և ցույցերի մասնակիցների նկատմամբ գործադրվող նմանօրինակ ֆաշիստական դաժան



ու դատաստանը պարզ պատկերացում է տալիս, թե իրականում ինչ են իրենից ներկայացնում այսպես կոչված «ժողովների ազատությունը» և «խոսքի ազատությունը» «դեմոկրատական» Ամերիկայում։

ԱՄՆ-ում առանձնապես դաժան հալածանքների են ենթարկվում պրոգրեսիվ շարժման մասնակից այն ամերիկացիները, որոնք օտարերկրյա ծագում ունեն։ ԱՄՆ-ում գոյություն ունի մի ֆաշիստական օրենք, որի համաձայն կոմպարտիայի այն անդամները, որոնք ամերիկյան քաղաքացիներ չեն, պետք է արտաքսվեն երկրից կամ բանտարկվեն համակենտրոնացման ճամբարներում՝ 10 տարով։ ԱՄՆ-ի արդարադատության մինիստրությունը, ըստ իր հայտարարության, պատրաստվում է նման պատժի ենթարկել ավելի քան 3 հազար մարդու։ Այս տարվա սեպտեմբերին արդարադատության մինիստրությունում ստեղծվել է մի հատուկ բաժին, որն զբաղվում է պրոգրեսիվ գործիչների, գլխավորապես օտարերկրյա ծագում ունեցող ամերիկացիների, մասսայական ձերբակալությունների նախապատրաստման գործով։ Արդարադատության մինիստրության ազդանշանով՝ համակենտրոնացման ճամբարները կնետվեն խաղաղության հարյուր հազարավոր մարտիկներ։ Այդ նպատակով ԱՄՆ-ի չորս տարբեր կետերում արագացված տեմպերով կառուցվում են համակենտրոնացման վեցը նոր ճամբարներ։

Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող

շրջանները փորձում են իրենց իմպերիալիստական քաղաքականությանը ծառայեցնել կուլտուրան, գիտությունը, արվեստը։ Ամերիկյան ռեակցիոներները բոլոր միջոցներով աշխատում են ճնշել պրոգրեսիվ մամուլը։ Ամերիկյան հայտնի գրող Մայկլ Հոլդը հայտարարել է, որ այսօր ԱՄՆ-ում գրողը կամ պետք է ատոմային ռումբի հիմն երգի, կամ ենթարկվի հետապնդումների՝ որպես օրենքից դուրս հայտարարված մարդու։

Այժմ ԱՄՆ-ում մասսայական մասշտաբով զտում է անցկացվում գրադարաններում։ «Ամերիկյան անվտանգության պահպանողները» այստեղ ևս գերազանցեցին հիտլերականներին։ Համաման ենթակա «կազմալուծիչ գրականության» ցուցակների մեջ են մտցվել Հովարդ Ֆաստի պատմական վեպերը, նեգր կին գրող Շիրլա Գրեհեմի գրքերը և անգամ Մարկ Տվենի «Արտուր արքայի պալատի յանկիները» երկը։ Դպրոցական գրադարաններում արգելված են նույնիսկ բուրժուական «Նեյշն», «Նյու ռիպաբլիկ» ժուռնալները, պրոգրեսիվ «Նյու ուորլդ ռևյու» ժուռնալը և այլն։

«Նեյշն» ժուռնալը վերջերս գրել է, որ Սապալպա քաղաքում (Օկլախոմա նահանգ) մի խումբ ռեակցիոներներ տեղական իշխանությունների աջակցությամբ խարույկի վրա այրել են դպրոցական գրադարաններից հանած՝ պրոգրեսիվ ուղղություն ունեցող գրքերը։



Ներկայացուցիչների պալատում քննության է առնվում մի օրինագիծ, որով արգելվելու է կոմունիստական (այսինքն ամբողջ պրոգրեսիվ) գրականության տարածումը փոստով։

Ամերիկյան կառավարող շրջանների ձեռնարկած վերջին միջոցառումներից մեկն էլ, որը գերազանցում է այն ամենին, ինչ ձեռնարկվել է այսպես կոչված «քայքայիչ» գրականության դեմ պայքարելու ասպարեզում, սովետական դեսպանատան ինֆորմացիոն բյուլետենի արգելումն է։ Ամերիկյան մոնոպոլիաների պարագլուխները կրակի նման վախենում են սովետական ժողովրդի կյանքի մասին ճշմարտացի ինֆորմացիայից։

Այն ժամանակ, երբ ամերիկյան խավարամոլները խարույկի վրա այրում են իսկական գեղարվեստական գրականության երկերը, ԱՄՆ-ում միլիոնավոր տիրաժներով հրատարակվում են մարդասպանությունը, կողոպուտը, այլասերվածությունը փառաբանող գրքեր ու ժուռնալներ։ Այսպես, երեխաների մեջ տարածվում են «կոմիկս» գրքերի անվերջ սերիաները, որոնց հերոսները կատարում են ամենազազրելի ոճրագործություններ։ «Երիտասարդ հանցագործներ», «Մարդասպաններ», «Հուշակավոր հանցագործություններ», «Մարդասպանը»՝ ահա նրանց համար տիպիկ անունները։

Զարմանալի չէ, որ ԱՄՆ-ում տարեց տարի աճում է հանցագործության համար դատապարտված երեխաների ու անչափահասների թիվը։ 1951 թվականին

նրանց թիվը 10 տոկոսով ավելի էր, քան 1950 թվականին, իսկ 1952 թվականին՝ 38 տոկոսով ավելի, քան անցյալ տարին։

Ամենաստոր բնազդներ են պատվաստում ամերիկյան կինոն, թատրոնները, ռադիոն և հեռուստատեսությունը։

Ամերիկյան իմպերիալիստները կինոն, թատրոնը, ռադիոն, ինչպես և գրականությունը, պատերազմի պրոպագանդի գործիք են դարձրել։ Կինոյից և արվեստի մյուս բնագավառներից վտարվում են պրոգրեսիվ գործիչները։ Այստեղ ստեղծված է մարդկանց գաղտնի հետապնդելու և մատնությունների մթնոլորտ։

Ամերիկյան թատերական քննադատ Գերբիգը վերջերս գրել է. «Դերասանները վախենում են խաղալ, գրողները վախենում են գրել, ռեժիսյորները վախենում են պիեսներ և պատկերներ բեմադրել»։ Կինոյում աշխատելու իրավունքից զրկվել են տաղանդավոր կինոսցենարիստներ Ջոն Հովարդ Լոուսոնը, Ալբերտ Մալցը, Դալտոն Տրումբոն և ուրիշներ։ Ոստիկության զոհ է դարձել նաև աշխարհահռչակ կինոդերասան և բեմադրող Չարլի Չապլինը։ Նա չի կարող ԱՄՆ-ում ցուցադրել իր «Նոր ժամանակներ» և «Մեծ դիկտատոր» ֆիլմերը, որոնք մերկացնում են ռեակցիան։ Օգտվելով այն բանից, որ Չապլինը և նրա ընտանիքը որոշ ժամանակով մեկնել են Անգլիա, ԱՄՆ-ի արդարադատության մինիստր Մակգրենորին հրաման է



արձակել թույլ չտալու, որ հռչակավոր արտիստը երկիր վերադառնա։ Ինչպես հաղորդում է Յունայտեդ Պրես գործակալությունը, եթե Չապլինը վերադառնա, ապա նա կնետվի Էլիս կղզու վրա գտնվող համակենտրոնացման ճամբարը։

Իսկ ի՞նչ է արտադրում ամերիկյան կինոարդյունաբերությունը։ Ահա նրա ֆիլմերի մի քանի տիպիկ անուններ. «Ավազակը», «Զինված կողոպտիչները», «Ամերիկացին Հնդկաչինում», «Ճակատամարտ Կորեայի համար» և այլն։ Այդ ֆիլմերը գովերգում են ամերիկյան զինվորների ոճրագործությունները Կորեայում, գովերգում են մարդասպանությունը, այլասերվածությունը, պատերազմի կոչ են անում ընդդեմ Սովետական Միության, նպաստում են հակակոմունիստական հիստերիայի բորբոքմանը։ Պրոգրեսիվ ռեժիսորների ֆիլմերը դուրս են քշված էկրաններից, իսկ իրենք՝ ռեժիսյորները ստիպված են ապաստան որոնել ուրիշ երկրներում։

Երկրի ֆաշիստացումը առավել ցայտուն կերպով արտահայտվում է նեգրերի նկատմամբ եղած վերաբերմունքի մեջ, որոնց թիվը ԱՄՆ-ում հասնում է 15 միլիոնի։ Ամբողջ առաջավոր մարդկությունը վրդովված էր Մարտինսվիլլի, Տրենտոնի նեգրերի մահապատժի և Վիլլի Մակգի մահապատժի առթիվ։ Սակայն դա ամերիկյան ռասիստների վերջին ոճրագործությունը չէր։ Բոլորովին վերջերս, օգոստոսի 25-ին, Ռիչմոնդում (Վիրգինիա նահանգ) էլեկտրական աթոռի

վրա մահապատժի ենթարկվեց ամենևին անմեղ 22-ամյա նեգր Ալբերտ Ջեկսոնը։

Հականեգրական ջարդերը սովորական երևույթ են դարձել ԱՄՆ-ում։ Տիպիկ օրինակ կարող է ծառայել այն ջարդը, որ այս տարվա հուլիսի 1-ին Չիգակո քաղաքում կազմակերպվեց ֆաշիստական մարդասպանների չորս հազարանոց ոհմակը՝ «Կու-կլուքս-կլան» սևհարյուրակային կազմակերպության անդամները։ Ջարդի առիթն այն էր, որ նեգրերը մտադրվել էին տեղափոխվել «քաղաքի սպիտակ շրջանի» բնակարաններից մեկը։

Ռեակցիան դաժան հալածանքների է ենթարկում ականավոր նեգր գործիչներին, խաղաղության շարժման մասնակիցներին՝ Պոլ Ռոբսոնին, Դյուբայսին, Պատերսոնին և ուրիշներին։ Ականավոր երգիչ Պոլ Ռոբսոնը զրկված է համերգներ տալու հնարավորությունից, որովհետև դահլիճների տերերը հրաժարվում են նրան դահլիճ տրամադրել։ Հայտնի նեգր երգչուհի Պիրլ Բեյլին իր համերգի նախօրյակին ծեծի ենթարկվեց խուլիգանների կողմից։

Ռեակցիայի հարձակումը, որ ձգտում է խեղդել պրոգրեսիվ միտքը երկրում, ջախջախել խաղաղության կողմնակիցների շարքերը, վճռական դիմադրության է հանդիպում ամերիկյան հասարակ ժողովրդի կողմից։

Երկրի բոլոր ծայրերից պրեզիդենտի, կոնգրեսականների, թերթերի խմբագրությունների հասցե-



ներով ուղարկած իրենց նամակներում հասարակ ամերիկացիները պահանջում են վերջ տալ Կորեայում մղվող պատերազմին, խաղաղության Պակտ կնքել մեծ տերությունների միջև և բոլոր վիճելի հարցերը լուծել միջազգային բանակցությունների միջոցով։

Նյու-Յորք քաղաքի 18 հազար բնակիչներ այս տարվա օգոստոսի 20-ին միտինգի հավաքվելով, ընդունել էին մի բանաձև, որի մեջ ասված է.

«Սոսկալի սպանդը շարունակվում է Կորեայում, մինչդեռ զինադադարի բանակցությունները ձգձգվում են... իսկ այդ պատերազմը համաշխարհային սոսկալի պատերազմի վերածելու վտանգը ուժեղացել է։

Մենք, Նյու-Յորքի 18 հազար բնակիչներս... կոչ ենք անում ձեզ, պ-ն պրեզիդենտ, վերջ տալ Կորեայում մղվող պատերազմին, անհապաղ զինադադար ստորագրելով»։

Չնայած ոստիկանական հալածանքներին, ԱՄՆ-ի աշխատավորների լայն մասսաները էլ ավելի համարձակորեն ու բարձրաձայն պահանջում են, որ վերջ տրվի Կորեայում մղվող պատերազմին։ ԱՄՆ-ում հսկայական չափեր է ընդունել գործադուլային շարժումը։ Ամերիկայի հասարակ ժողովուրդը ավելի ու ավելի վճռականորեն բողոքում է ԱՄՆ-ի կառավարող շրջանների իմպերիալիստական քաղաքականության դեմ, ֆաշիստացման, պատերազմի և ժողովրդական մասսաների աղքատացման քաղաքականության դեմ։

Ն. ՄՈՍՏՈՎԵՑ



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ն. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Ճառ ՀամԿ(բ)Պ XIX համագումարում: *30 էջ, գինը 30 կոպ.։*

Լ. ԲԵՐԻԱ.— Ճառ ՀամԿ(բ)Պ XIX համագումարում: *31 էջ, գինը 30 կոպ.։*

Ա. ՄԻԿՈՅԱՆ.— Ճառ ՀամԿ(բ)Պ XIX համագումարում: *29 էջ, գինը 30 կոպ.։*

Ե. ԿԱՍԻՄՈՎՍԿԻ.— Կոմունիզմի մեծ կառուցումները: *130 էջ, գինը 1 ռ. 65 կոպ.։*

Ա. Պ. ՉԵԽՈՎ.— Պատմվածքներ: *148 էջ, գինը 3 ռ. 90 կոպ.։*

ՎԻԼԻՍ ԼԱՑԻՍ.— «Փոթորիկ» *Ստալինյան մրցանակի արժանացած վեպ։ Հատոր երրորդ։ 424 էջ, գինը 7 ռ. 20 կոպ.։*

ՀՐ. ՔՈՉԱՐ.— «Մեծ տան զավակները», *վեպ։ 728 էջ, գինը 15 ռ. 90 կոպ.։*

---

Իտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

ՎՖ 07857 Պատվեր 958 Տիրաժ 9210

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան,
Կնունյանցի փ. № 8

